Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
և մասսայական ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 17 (24)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խռ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ կուլտ. պրոպագանդայի
և ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 17 (24)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1937

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Սրբագրիչ՝ Տ. Տերունի
Հրատ. №18. Պատվեր №156
Գլավլիտի լիազոր Շ— 1256
Տիրաժ 6926

[illegible] Հայաստան-ի հրատ. տպարան, Երևան

# ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՉԻՆԱՍՏԱՆ

Հյուսիսային Չինաստանն աչքի ընկնող նշանակություն ունի ամբողջ Չինաստանի ժողովրդական տնտեսության համար, չինական արդյունաբերության, մասնավորապես ծանր արդյունաբերության զարգացման համար և ճապոնական հափշտակիչների դեմ ազգային պաշտպանություն կազմակերպելու համար:

Հյուսիսային Չինաստանի տնտեսական և ռազմա—ստրատեգիկական նշանակությամբ և պայմանավորված այն «հատուկ հետաքրքրությունը», որ ճապոնական իմպերիալիստները ցուցաբերում են այդ երկրի նկատմամբ: Հյուսիսային Չինաստանի գրավումը ճապոնացիներին հնարավորություն կտար անդամահատելու Չինաստանի ինդուստրացումն ու նրա ազգա-

յին պաշտպանությունը, ճապոնացիների ձեռքը կհանձներ ամբողջ Չինաստանի տնտեսության վրա նշանակալից ազդեցություն գործելու հրամանատարական բարձունքները: Ճապոնական իմպերիալիստների դիտավորության համաձայն, Հյուսիսային Չինաստանը պետք է հանդիսանա մի պլացդարմ, վորի վրա հենվելով ճապոնական հափշտակիչներն իրենց ռազմա-քաղաքական ու տնտեսական ազդեցին տարածեն ավելի հեռու՝ դեպի Հյուսիս-արևմտյան և Կենտրոնական Չինաստանը:

Այսպիսով, Հյուսիսային Չինաստանի գրավումը հերթական ետապ է հանդիսանում ամբողջ Չինաստանը նվաճելու ճանապարհին:

Հյուսիսային Չինաստանը, Մանջոու-գոյի և Չինաստանի միջև բուֆերի դեր խաղալով, ըստ ճապոնական պլանների պետք է ավելի հաստատուն դարձնի Մանջուրիայի գրավումը:

Միևնույն ժամանակ Հյուսիսային Չինաստանը մտնում է ճապոնական պլանների մեջ, վորպես պլացդարմ Մոնղոլիայի ժողովրդական Հանրապետության ու Խորհըր-



դային Միության վրա հարձակում նախապատրաստելու համար:

Հյուսիսային Չինաստանն աչքի ընկնող դեր ունի այն պլանների մեջ, վորոնց համաձայն ճապոնացիները սատանի թափով պատրաստվում են «մեծ պատերազմի» աշխարհի նոր վերաբաժանման համար. ըստ վորում ճապոնական իմպերիալիստներն իրենց ձգտումները բնավ չեն սահմանափակում միայն Չինաստանով: Անգլիայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Հոլանդիայի և ուրիշների գաղութային յերկրները մտնում են ճապոնացիների նվաճողական պլանների մեջ: Այս մասին 1927 թվականին բացահայտորեն հայտարարեց ճապոնական մինիստր-նախագահ Տանական իր աղմուկ հանած մեմորանդումի մեջ:

***

Հյուսիսային Չինաստանն ընդգրկում է 5 նահանգ—Հոբեյ, Շանդուն, Չախար, Սույան և Շանսի: Այս նահանգները բռնում են մոտ մեկ միլիոն 60 հազար քառակուսի կիլոմետր տարածություն և ունեն 82,4 միլիոն բնակիչ: Հյուսիսային Չինաստանի

տարածությունը կազմում է ամբողջ Չինաստանի (որն ունի 11,7 միլիոն ք. կմ.) տարածության մեկ տասներորդ մասը, իսկ բնակչությունը՝ ամբողջ Չինաստանի (որն ունի 466,8 միլ. բնակիչ), բնակչության գրեթե մեկ հինգերորդ մասը: Համեմատության համար համապատասխան թվեր բերենք Մանջուրիայի ու Ժեհեյի վերաբերմամբ—համապատասխան կերպով սրանց տարածությունը կազմում է մեկ միլիոն 285 հազար քառ. կիլոմետր, բնակչությունը՝ 29,8 միլիոն մարդ: Հյուսիսային Չինաստանի նահանգներից ամենից ավելի մեծ տարածություն են բռնում Չախարն ու Սույանը, իսկ ամենից ավելի շատ բնակչություն ունեն Հոբեյը, Շանդունն ու Շանսին:

Հյուսիսային Չինաստանի արևելյան սահմանը կազմում է Մանջուրիան, հյուսիսային սահմանը՝ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը, արևմտյան սահմանը՝ այսպես կոչված Հյուսիս-Արևմտյան Չինաստանը, իսկ հարավային սահմանը՝ Կենտրոնական Չինաստանը: Հյուսիսային Չինաստանի ափերն արևելքից ողողում է



Դեղին ծովը՝ Բոխայի կամ Չժիլիի ծոցով: Արևմուտքից և հարավից հոսում է Դեղին գետը (Խուանխե):

Հյուսիսային Չինաստանի արևելյան մասը, որն ընդգրկում է Հոբեյի ու Շանդունի նահանգները, մի տափարակ է հանդիսանում այսպես կոչված Հյուսիսային-Չինական հարթավայրում: Կլիմայական և հողային պայմաններն այստեղ նպաստավոր են գյուղատնտեսության համար: Այստեղ գյուղատնտեսությամբ զբաղվում են կլոր տարին. ամառն այստեղ աճում է բամբակ, կորեկ, յեգիպտացորեն, գաոլյան և բակլա, իսկ ձմեռը՝ ցորեն և գարի:

Հոբեյի և Շանդունի նահանգների արևելյան կողմերը գտնվում են ծովի ափին, և այս շրջանում լայնորեն զարգացած են ձկնորսությունն ու աղի հանույթը: Այս նահանգների արևելյան մասերը լեռնոտ բնույթ ունեն և պարունակում են օգտակար հանածոների մեծ պաշարներ: Օգտակար հանածոներով հատկապես հարուստ է Հյուսիսային Չինաստանի արևմտյան մասը, որը կտրտված է Շանսիի նահանգի լեռներով: Հյուսիսային.

Չինաստանի Հյուսիսային մասը հանդիսանում է բարձր լեռնային սարահարթ՝ արոտավայրերով, որոնք նպաստում են անասնապահության զարգացմանը: Գյուղատնտեսությունն ու արդյունաբերությունն ամենից ավելի զարգացած են Հոբեյի, Շանդունի և Շանսիի նահանգներում, իսկ անասնապահությունը զարգացած է Չախարի, Սույանի ու Շանսիի նահանգներում: Հյուսիսային Չինաստանի գլխավոր արդյունաբերական կենտրոնները հանդիսանում են Տյանցզինն ու Ցինդաոն:

Հյուսիսային Չինաստանի գյուղատնտեսական արտադրանքը գլխավորապես սպառվում է տեղում: Բայց և այնպես Հյուսիսային Չինաստանի առանձնահատկությունը հանդիսանում է այն, որ նա ունի բամբակագործության զարգացման նպաստավոր պայմաններ: Հյուսիսային Չինաստանի բամբակի նշանակությունը ցույց են տալիս հետևյալ թվերը.—1935 թվականին Հյուսիսային Չինաստանը տվել է 4,2 միլիոն պիկուլ բամբակ (մեկ պիկուլը հավասար է 500 գրամի)— այսինքն՝ մոտավորապես մեկ երրորդ մասն ամբողջ Չինաստանի



արտադրած բամբակի: 1935 թվականին Չինաստանի արտահանած 315 հազար կվինտալ բամբակի հումքի մեջ Տյանցզինի բաժինը կազմում էր 188 հազար կվինտալ: Այսպիսով, Հյուսիսային Չինաստանի բամբակը կարևոր դեր է խաղում չինական տեքստիլ արդյունաբերության զարգացման մեջ: Մյուս կողմից, Ճապոնիան բամբակի կարիք է զգում իր տեքստիլ և ռազմական արդյունաբերության համար: Ճապոնիան գլխավորապես բամբակը ներմուծում է Ամերիկայից և Հնդկաստանից: Մանջուրիայի պայմաններն աննպաստ դուրս եկան բամբակագործության լայն զարգացման համար, ուստի ճապոնական իմպերիալիզմն իր հիմնական խնդիրներից մեկը համարում է Հյուսիսային Չինաստանը դարձնել իր համար բամբակի բազա:

Հյուսիսային Չինաստանում աչքի ընկնող դեր է խաղում անասնապահությունը: Բրդի հիմնական արտադրանքը տալիս է Հյուսիսային Չինաստանը: 1935 թվականին Չինաստանի արտահանած բրդի 86 տոկոսը պատկանում էր Հյուսիսային Չինաստանին:

Մեծ է Հյուսիսային Չինաստանի նշանա-

կությունը նաև թռչնաբուծության տեսակետից: 1935 թվականին Հյուսիսային Չինաստանից (գլխավորապես Հոբեյից և Շանդունից) արտահանված ձվի քանակը կազմում էր ամբողջ Չինաստանի ձվի արտահանության 47 տոկոսը:

Հյուսիսային Չինաստանի ծովային արտադրանքը նույնպես մեծ չափերի յե հասնում: Օրինակ՝ 1935 թվականին Հոբեյի և Շանդունի գծով այդ արտադրանքը կազմում էր 11,6 միլիոն չինական դոլլար:

Շատ լուրջ նշանակություն ունի Հյուսիսային Չինաստանի աղը: Հյուսիսային Չինաստանի արտադրած աղը կազմում է ամբողջ Չինաստանի արտադրած աղի ավելի քան մեկ յերրորդ մասը: Բամբակի հետ միասին, ճապոնական իմպերիալիզմին այստեղ է գրավում նաև աղը: Ճապոնական իմպերիալիզմը, բավականաչափ աղի աղբյուրներ չունենալով իր կղզիներում և գաղութներում, զգալի չափով աղ է ներմուծում Աֆրիկայից: Իսկ ճապոնական ռազմա-քիմիական արդյունաբերությունը կարիք է զգում այպահովվելու աղի սեփական բավարար ռեսուրսներով: Ձգտելով գրավելու Հյուսիսային Չինաստանը, ճապոնացիները



նպատակ ունեն նաև ստեղծելու սեփական աղի բազա, վորի մեջ պետք է մտնեն Մանջուրիան և Հյուսիսային Չինաստանի Հոբեյի ու Շանդունի նահանգները:

Չափազանց մեծ նշանակություն ունեն Հյուսիսային Չինաստանի օգտակար հանածոները—ածուխն ու յերկաթը: Հյուսիսային Չինաստանի ածխի պաշարները կազմում են 133 միլիարդ տոննի չափ, այսինքն՝ Չինաստանի ամբողջ ածխային ռեսուրսների 53,91 տոկոսը: Ածխի հիմնական հարստությունները գտնվում են Շանսիի նահանգում, վորն ունի 127 միլիարդ տոնն պաշար: Նշանակալից չափով ածխաշերտեր կան նաև Հոբեյի ու Շանդունի նահանգներում: Ածխի արտադրանքը Հյուսիսային Չինաստանում ավելի այչեցուցիչ պատկեր է ներկայացնում, յեթե չհաշվենք Մանջուրիան, ապա կտեսնենք, վոր Բուն Չինաստանի ածխի արտադրանքը կազմում է մոտ 19 և կես միլիոն տոնն: Այս քանակից Հյուսիսային Չինաստանին բաժին է ընկնում ավելի քան 12 և կես միլիոն տոնն: Իսկ Մանջուրիայի արտադրածը կազմում է ավելի քան 29 միլիոն տոնն:

Հյուսիսային Չինաստանի ածխահանքերի զգալի մասը պատկանում է օտարերկրյա կապիտալի: Օրինակ՝ թե Հյուսիսային և թե ամբողջ Չինաստանում խոշորագույն ածխահանքերը պատկանում են անգլո-չինական ձեռնարկության՝ Կայլանի լեռնային ընկերությանը: Այս հանքերը, որոնք գտնվում են Հոբեյի նահանգի արևելյան մասում, տարեկան տալիս են 4–5 միլիոն տոնն արտադրանք: Բեյպինից դեպի արևմուտք գտնվում ե մի ուրիշ անգլո-չինական ձեռնարկության՝ «Մինտոուկոու» ընկերության հանքերը, որոնց տարեկան արտադրանքը կազմում ե մոտ 30 հազար տոնն: Խոշորագույն ձեռնարկություն ե հանդիսանում չին-ճապոնական (փաստորեն ճապոնական) «Լուդա» ընկերությունը, որի ածխահանքերը ձգված են Շանդունի երկաթուղագծի երկարությամբ և տալիս են տարեկան 700 հազար տոնն արտադրանք: Հոբեյի և Շանսիի միջև, Չժենդայի երկաթուղագծի երկարությամբ, գտնվում են Ցզինսինի ածխահանքերը, որոնք պատկանում են չին-գերմանական ձեռնարկու-



թյան և տարեկան տալիս են 800 հազար
տոնն արտադրանք: Միակ զուտ չինական
ձեռնարկությունը հանդիսանում ե Չժուսի-
նի ընկերությունը, որի հանքերը գտնվում
են Հարավային Շանդունում:
Հյուսիսային Չինաստանի ածխի ռեսուրս-
ներին տիրելը նույնպես մտնում կ ճապո-
նական իմպերիալիստների պլանի մեջ:
Երկաթահանքի տեսակետից ամենահա-
րուստը հանդիսանում ե Մանջուրիան: Ամ-
բողջ Չինաստանում հետախուզված 1·133
հազար տոնն երկաթահանքի ընդհանուր
քանակից Մանջուրիային բաժին ե ընկնում
872 միլիոն տոնն: Գրավելով Մանջուրիան,
ճապոնացիներն այդպիսով առյուծի բաժին
խլեցին Չինաստանի երկաթի հարստու-
թյուններից: Բուն Չինաստանի մնացած
երկաթահանքերի ռեսուրսներից Հյուսիսա-
յին Չինաստանին բաժին ե ընկնում մոտ
124 միլիոն տոնն, (իսկ մյուս նահանգնե-
րին՝ 137 միլիոն տոնն): Հարկավոր ե նշել,
որ Հյուսիսային Չինաստանի երկաթը,
այնպես էլ Հյուսիսային-չինական ածուխը,
զգալի չափով ավելի բարձր որակ ունի
ճապո-
մանջուրականի հետ համեմատած:

նական իմպերիալիստների ախորժակը տարածվում է նաև Հյուսիսային Չինաստանի յերկաթահանքերի վրա:

Հյուսիսային Չինաստանի ածխի և յերկաթի գրավումը Ճապոնիայի համար նշանակություն ունի վոչ միայն «մեծ պատերազմի» պատրաստվելու տեսակետից, այլև Չինաստանի ինդուստրացումն ու ճապոնական հափշտակիչների դեմ ուղղված չինական ազգային պաշտպանության կազմակերպումը քայքայելու տեսակետից: Հյուսիսային Չինաստանի ածխի ու յերկաթի գրավումը կարևոր նշանակություն ունի նաև ճապոնական այն պլանների համար, վորոնց համաձայն ճապոնական իմպերիալիստները ձգտում են Չինաստանը դարձնել ճապոնական գաղութ, ինդուստրիալ Ճապոնիայի ագրարային կցորդ:

Հյուսիսային Չինաստանի հիմնական արդյունաբերությունը հանդիսանում է տեքստիլ արդյունաբերությունը: 1936 թվականի տվյալների համաձայն, Հյուսիսային Չինաստանում կար 28 բամբակեղենի գործարան, վորից 10-ը՝ Հոբեյում, 13-ը՝ Շանդունում և 5-ը՝ Շանսիում: Այս գոր-



ծարաններից 15-ը պատկանում եյին չինացիներին, իսկ 13-ը—առավել խոշորներն ու ժամանակակիցները— ճապոնացիներին: Չինական գործարաններն ընդամենը ունեյին 333 հազար մանածային իլիկ և 3·546 գործվածքային դազգյահ, իսկ ճապոնական գործարաններն ունեյին 689 հազար իլիկ և 9·364 գործվածքային դազգյահ: Այդ ժամանակաշրջանում Հյուսիսային Չինաստանի բոլոր իլիկները կազմում եյին ամբողջ Չինաստանի ունեցածի մոտ մեկ հինգերորդը, իսկ գործվածքային դազգյահները՝ մոտ մեկ չորրորդը: Հյուսիսային Չինաստանում տեքստիլ արդյունաբերության գլխավոր կենտրոնները հանդիսանում են Տյանցզինն ու Ցինդաոն:

Հյուսիսային Չինաստանում կա 18 բրդեղենի գործարան, վորից 7-ը գտնվում են Տյանցզինում, 6-ը՝ Բեյպինում, 3-ը՝ Շանսիում և 2-ը՝ Սույյանում:

Հյուսիսային Չինաստանը ներխուժելուց հետո ճապոնացիներն ամեն ջանք թափում են, վորպեսզի իրենց ձեռքում հավաքեն բամբակեղենի և բրդեղենի արդյունաբերությունը: «Գնելով» չինական ձեռնարկու-

թյունները, ճապոնացիներն արագ տեմպով լայնացնում են իրենց հին ձեռնարկությունները և կառուցում են նորերը, ձգտելով լիակատար հեգեմոն դառնալու չինական տեքստիլ արդյունաբերության մեջ և մոնոպոլիայի յենթարկելու չինական տեքստիլ շուկան:

Հյուսիսային Չինաստանում աչքի ընկնող տեղ է գրավում նմանապես ածխային արդյունաբերությունը: 1934 թվականին Չինաստանում յեղած 157 ածխային ձեռնարկություններից 32-ը գտնվում եյին Հյուսիսային Չինաստանում, վորոնցից 2-ը ճապոնական են: Ածխային արդյունաբերությունը գլխավորապես կենտրոնացած է Տյանցզինում և Ցզինանում:

Մեծ դեր է խաղում նաև քիմիական արդյունաբերությունը— ալկալիական և թթվուտային: Քիմիական արդյունաբերության կենտրոններն են Տյանցզինն ու Տյանշանը (վերջինս գտնվում է Տյանցզինի կողքին): Տյանցզինի շրջանի քիմիական արդյունաբերությունն աչքի ընկնող դիրք է գրավում ամբողջ Չինաստանում: «Յունլի» ընկերության սոդայի գործարանները խոշորա-



գույնն են հանդիսանում վոչ միայն Չինաստանում, այլև ամբողջ Արևելյան Ասիայում: Տյանցզինի շրջանում կա 3 ալկալիական և 3 թթվուտային գործարան: Բացի դրանից, Շանդունում կա ներկեր արտադրող յերկու ժամանակակից գործարան:

Արդյունաբերության այլ ճյուղերից պետք է հիշատակել թղթի, կաշու, բրուտագործական, ապակու, ցեմենտի և լուցկու արդյունաբերությունը: Այս ճյուղերի նշանակությունը տարածվում է Հյուսիսային Չինաստանի սահմաններից դուրս: Դա հատկապես վերաբերում է ապակու և ցեմենտի արդյունաբերությանը: Դեռ նախքան Հյուսիսային Չինաստանի գրավումը ճապոնական կապիտալը խոր արմատներ եր գցել արդյունաբերության այս բոլոր ճյուղերում: Հյուսիսային Չինաստան ներխուժելուց հետո ճապոնացիներն արագ տեմպով սկսում են տիրանալ չինական ձեռնարկություններին և կառուցել նոր ձեռնարկություններ:

Հյուսիսային Չինաստանի յերկաթուղագծերի ընդհանուր յերկարությունը կազ-

մում է 5.455 կիլոմետր՝ ամբողջ Չինաստանի ունեցած 9.392 կիլոմետրից: Հյուսիսային Չինաստանով անցնում են այնպիսի յերկաթուղագծեր, վորոնք կարեվոր նշանակություն ունեն ամբողջ Չինաստանի ժողովրդական տնտեսության և ազգային պաշտպանության համար: Որինակ՝ Հյուսիսային Չինաստանով է անցնում Բեյպին-Հանկոու յերկաթուղագիծը, վորը Հյուսիսային Չինաստանը կապում է Ներքին Մոնղոլիայի և Կենտրոնական ու Հարավային Չինաստանի հետ: Ապա գալիս են՝ Տյանցզին-Պուկոու յերկաթուղագիծը, վորը Հյուսիսային Չինաստանը միացնում է Շան հայի շրջանի հետ, Բեյպին-Սույյան գիծը, վորը Բուն Չինաստանը կապում է Ներքին Մոնղոլիայի հետ, Բեյպին-Մուկդեն գիծը, վորը Հյուսիսային Չինաստանը միացնում է Մանջուրիայի հետ:

Հյուսիսային Չինաստանի ներքին յերկաթուղագծերը հետեվյալներն են.— Չժենտայի գիծը (Շիցզյաչժուան—Տայյուան), վորը Շանսիի նահանգը կապում է Բեյպին—Հանկոու յերկաթուղագծի հետ, Ցզինան-Ցզյաոչժոու գիծը, վոր Շանդունի նահանգը կապում է Տյանցզին—Պուկոու յերկաթուղագծի հետ:



Մանջուրիայի գրավումից հետո ճապոնացիների ձեռքն ընկավ Բեյպին-Մուկդեն յերկաթուղագիծը՝ Շանհայգուանից մինչև Մուկդեն: Հյուսիսային Չինաստան ներխուժելուց հետո ճապոնացիները փաստորեն իրենց հսկողության տակ են առնում Բեյպին-Մուկդեն յերկաթուղագծի մնացած մասը՝ Շանհայգուանից մինչև Բեյպին: Միևնույն ժամանակ ճապոնացիները բոլոր միջոցները ձեռք են առնում իրենց ազդեցությունը տարածելու համար նաև Հյուսիսային Չինաստանով անցնող մյուս յերկաթուղագծերի վրա:

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱԳՐԵՍՈՐԻ ԹԻԿՈՒՆՔՈՒՄ

Խաղաղության պահպանմամբ շահագրգռված յերկրների ամենաայժմեական խնդիրն է՝ մերկացնել Գերմանիայի մանյովրները պատերազմի հոգեբանական նախապատրաստման ասպարեզում: Պատերազմի նախապատրաստության այս կողմը թերագնահատելը խիստ վտանգավոր կլինի:

Ֆաշիստական Գերմանիան ներկայումս ձեռնարկում է լայնորեն մտածված հոգեբանական գրոհ: Յերրորդ կայսրությունը ձգտում է մյուս յերկրներին համոզել, վոր ինքն անպարտելի յէ: Չափազանցություն չի լինի, յեթե ասենք, վոր ֆաշիստական Գերմանիան հսկայական ճիգ է թափում և ահագին միջոցներ է վատնում, վորպեսզի պահպանի ֆաշիստական ագրեսորի անպարտելիության առասպելը: Քաղաքագետների,



վաճառված ժուռնալիստների ու կեղծ գիտնականների մի հսկայական վարձկան բանակ գովերգում է Գերմանիայի ռազմական հզորությունը և ամեն կերպ ձգտում է ծածկելու նրա ներքին թուլությունը:

## ՄԵՐԿԱՑՎԱԾ ԱՌԱՍՊԵԼ

Արտաքնապես կարծես թե ամեն ինչ միանգամայն փայլուն է յերևում: Կինոների էկրանների վրա, ժուռնալների էջերում, թերթերի նկարազարդ հավելվածներում և այլ տեղերում կարելի յէ տեսնել անհամար զորահանդեսներ ու զորատեսներ: Զորքերը քաջարար քայլում են և «աչքերով ուտում են» հրամանատարությունը:

Գերմանական ռազմական տեսաբանները հայտարարում են ամբողջ աշխարհին, վոր Գերմանիայի մղելիք պատերազմը կհանդիսանա «տոտալ»*) պատերազմ և ամբողջովին կվոչնչացնի հակառակորդին:

*) «Տոտալ» պատերազմ— Ֆաշիստական ռազմական թեորետիկների մոտ նշանակում է այնպիսի պատերազմ, վորն ընդհանուր մոբիլիզացիայի կարգով ոգտագործում են յերկրի մարդկային, նյութական և բարոյական բոլոր ռեսուրսները: «Տոտալ» բառի մանրամասն բացատրությունը տես՝ «Ագիտատորի Բլոկնոտ»-ի № 10 (17)-ում:

1914 թվականի պատերազմի սկզբում գերմանական հրամանատարությունը փորձեց իրագործել կյանքում այն պլանը, վորը պատկանում էր համաշխարհային պատերազմից քիչ ժամանակ առաջ մեռած՝ գերմանական գլխավոր շտաբի պետ Շլիֆենին: Շլիֆենը հույս ուներ, վոր կարելի կլինի Ֆրանսիային ջախջախել յերկու ամսվա ընթացքում, յեթե գերմանական բանակի հիմնական ուժերը հավաքվեն ու մի հզոր բռունցք կազմեն և Բելգիայի վրայով հարձակվեն Ֆրանսիայի վրա: Շլիֆենը պնդում էր, թե «յուրաքանչյուր ստրատեգիայի վոգին հանդիսանում է հակառակորդի ջախջախումը՝ հարձակման միջոցով»: Սակայն կայծակնային պատերազմի գերմանական պլանն արդեն կարճ ժամանակից հետո սնանկ դուրս յեկավ: Կռվող բանակները թաղնվեցին խրամատներում— նախ արևմտյան, ապա փոքր ժամանակ հետո նաև արևելյան ճակատում: Վրա հասավ դիրքային կռվի ժամանակաշրջան: 1916 թվականի ընթացքում մի քա-



նի փորձեր արվեցին դիրքային կռվի փակուղուց դուրս գալու յելք գտնելու, սակայն այդ փորձերը հաղթանակ չբերին այս կամ այն կռվող կողմին: 1918 թվականի մարտին Գերմանիան հուսահատական փորձ արեց հաղթանակ տանելու: 27 օրվա ընթացքում գերմանական զնդերը հրետանային մրրկային նախապատրաստությունից հետո հինգ անգամ դուրս յեկան խրամատներից, փորձելով Անգլո-Ֆրանսիական ճակատը պատռել, վորը նրանց մասամբ հաջողվեց: Բայց արդեն 1918 թ. հուլիսի կեսին դաշնակիցները կասեցրին գերմանական հարձակումը:

Գերմանական իմպերիալիզմի համար ողբալի հանդիսացող այս բոլոր փաստերը ժամանակակից Գերմանիայի տեսաբանները ճգնում են բացատրել այն բանով, վոր Շլիֆենի ստրատեգիական գաղափարները բավականաչափ հետևողականությամբ չկիրառվեցին կյանքում: Այդ գաղափարներն այժմ նորից վերածնվում են Գերմանիայում, զարգացվում են ու լրացվում:

Լյուդենդորֆը և «տոտալ» պատերազմի մյուս տեսաբանները ճեշտը գնում են ա-

ռանց պատերազմ հայտարարելու հակառա-
կորդին արագ ու կայծակնաթափ հարված
հասցնելու վրա, նպատակ ունենալով
վոչնչացնելու հակառակորդին նախքան
նրա գլխավոր ուժերի ծավալումը: Այս
նպատակի համար պետք է օգտագործվեն
լավ հանդերձված ավիացիան, ներխուժման
բանակի մոտո- մեքենայացված մասերը և
այլն:

Գերմանական ֆաշիզմը կարծես թե մյուս
յերկրներին ասում է՝ կամ կենթարկվեք
մեզ, կամ կվոչնչանաք «տոտալ» պատե-
րազմի հետևանքով:

Սակայն յեթե մենք մի կողմ թողնենք
ագրեսորի հզորության զորահանդեսային-
պաշտոնական պատկերը, ապա կտեսնենք
չափազանց հետաքրքիր փաստեր: Բեմեղեր-
քի կեղծ լույսերի տակ բուտաֆորիան հան-
դիսատեսի աչքին ցույց է տալիս «իսկա-
կան» կահ-կարասիներ, տներ, անտառներ
և այլն. բայց հենց վոր լույսերը մարում
են և բանվորներն սկսում են քանդել դե-
կորացիան, արդեն դժվար կլինի բուտա-
ֆորիան ընդունել իրականության տեղ:

Քաղաքական կյանքում նույնպես խիստ



օգտակար կլինի փորձել դիտելու այս կամ
այն պետության վոչ թե հանդիսավոր ֆա-
սադը, այլ նրա թիկունքում տեղի ունե-
ցածը: Գերմանիայի կյանքն այս կողմից
դիտելով, ամենից առաջ կտեսնենք, վոր
գերմանական զինվորական շրջանները խիստ
մտահոգված են գերմանական զինված ու-
ժերի այն խոշոր թերություններով, վո-
րոնք յերևան յեկան վերջին ժամանակներս:

Գվադալախարայի և Խարամայի մոտ ին-
տերվենտների կրած պարտությունները
ցույց տվին, վոր ֆաշիստական զորքերին ու
նրանց տեխնիկային լավ կարող է հարվա-
ծել այն ժողովուրդը, վորը գիտե, թե ին-
չի համար է կռվում ինքը: Գերմանական
ավիացիան ու ռազմական տեխնիկան
լուրջ փորձության յենթարկվեցին Իսպա-
նիայի դաշտերում: Գերմանական ռազմա-
կան մասնագետներն ստիպված են հաշվի
առնել մասնավորապես այն անողոք փաս-
տը, վոր գերմանական տանկերն ու սպա-
ռազինության մի շարք այլ տեսակներ
խիստ լուրջ թերություններ հանդես բերին:

Վերջին ժամանակներս գերմանական զին-
վորական շրջաններին ավելի ու ավելի յե
անհանգստություն պատճառում նաև գեր-

մանական սպառազինությունների մաշվածության հարցը: Գերմանիան իր սպառազինության համար ծախսել է հսկայական գումարներ. սակայն ռազմական տեխնիկան առաջ է գնում, և գերմանական սպառազինությունների մի շարք կատեգորիաներն արդեն հնացել են, մի քանի կատեգորիաներին էլ այդ վտանգն սպառնում է մոտիկ ժամանակներս, իսկ վերասպառազինության համար դրամը չի բավականացնում:

Գերմանիան չափազանց լուրջ դժվարություններ ունի պատերազմի համար տնտեսական բազա նախապատրաստելու ասպարեզում: Ինչպես, չէ՞ որ «տոտալ» պատերազմի գաղափարը չի հանգում լոկ հակառակորդին արագ ու ջախջախիչ հարված հասցնելու մտքին: Լյուդենդորֆն ու իր աշակերտներն անհրաժեշտ են համարում, վոր պատերազմի նպատակներին յենթարկվեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, յերկրի ամբողջ կյանքը՝ դեռ խաղաղ ժամանակ:

«Յեթե ճիշտ է, վոր գալիք պատերազմը լինելու յե տոտալ պատերազմ, ապա անհրաժեշտ է պատերազմի տոտալ և վոչ թե մասնակի նախապատրաստություն», — գր-



րում է «Ֆրանկֆուրտեր ցայտունգ» թերթը:

Բայց հենց պատերազմի այս տոտալ նախապատրաստության ասպարեզում գերմանական ֆաշիզմի համար վերջին ժամանակներս գործը բացահայտորեն անբարեհաջող է:

Վերջապես, բացառիկ կարևոր նշանակություն ունի այն հանգամանքը, վոր—ինչպես ցույց է տալիս վերջին ժամանակների փորձը— ագրեսորն անխուսափելիորեն նահանջում է, յերբ հանդիպում է խաղաղասեր յերկրների վճռական ու միասնական գործողություններին:

Այս բոլոր փաստերը քողազերծ են անում ագրեսորի անպարտելիության առասպելը:

Գերմանիայի զգացած դժվարություններն ավելի վորոշակիորեն յերևում են գերմանական թիկունքի կյանքի առանձին կողմերն ուսումնասիրելիս:

## ՀՈՒՄՔԻ ՃԳՆԱԺԱՄԻ ՍԱՍՏԿԱՑՈՒՄԸ

Գերմանիան չունի ռազմական հումքի կարևորագույն տեսակների սեփական աղ-

բյուրներ։ Վերջին տարիներս Գերմանիան, պատրաստվելով պատերազմի, սկսել է ավելի ու ավելի մեծ քանակությամբ ստրատեգիական հումք ներմուծել։ Հիտլերի կառավարության տարիներին կաուչուկի ներմուծումը 43,1 հազար տոննից հասել է 66 հազար տոննի (թվերը վերաբերում են համապատասխան տարիների 10 ամիսներին). պղնձահանքի ներմուծումը 213 հազարից հասել է 443 հազար տոննի, ցինկահանքի ներմուծումը՝ 54 հազարից 110 հազար տոննի, թիթեղի ներմուծումը՝ 47 հազարից 66 հազար տոննի։ Նավթի ներմուծումը վերջին յերեք տարվա ընթացքում կրկնապատկվել է։

Վերջին ժամանակներս ավելի յե սրվում հումքի պրոբլեմը։ Հումքի պակասություն է զգում տեքստիլ արդյունաբերությունը. մեծ թվով տեքստիլ բանվորներ աշխատում են կրճատ աշխատանքային օրով։ Հումքի պակասություն են զգում նաև չոգեքարշաշինարարական արդյունաբերությունն ու տրանսպորտին սպասարկող արդյունաբերական մյուս ճյուղերը։ Ավտոմոբիլային արդյունաբերությունը, վորը կարևոր դեր է խաղում գերմանական ֆաշիզմի ռազմական



հաշիվների մեջ, նմանապես ծայրահեղորեն լուրջ դժվարություններ է զգում հումքի մատակարարման ասպարեզում։ Յեթե 1936 թվականի գարնանը ավտոմոբիլային արդյունաբերության արտադրանքի սեզոնային աճումը կազմում եր 35 տոկոս՝ 1935 թվականի համեմատությամբ, ապա 1937 թվականի ապրիլին,— «Պրագեր միտտագ» թերթի հաղորդագրությամբ,— այդ արդյունաբերությունն իր արտադրանքն իջեցրել է 1,8 տոկոսով, իսկ մայիսին՝ 4 տոկոսով։

Գերմանիան արդյունաբերական հումքի կարևորագույն տեսակների ասպարեզում ունեցած դժվարությունների հետ միասին, գնալով ավելի ու ավելի մեծ պակասություն է զգում չուգունի, պողպատի և այլ մետաղների։ Դրա պատճառն այն է, վոր վալյուտան չի բավականացնում արտասահմանից յերկաթ ու զանազան լրացուցիչ մետաղներ գնելու համար, մետաղներ, վորոնք ռազմական արդյունաբերությունն օգտագործում է վորակական ձուլվածքների համար։ Ի միջի այլոց հիշատակենք, վոր մետաղի պակասության այս յերևույթը նկատվում է նաև Ճապոնիայում, նույնիսկ ավելի մեծ չափով։

Գերմանական կառավարությունը փորձում է այս դժվարությունների դեմ պայքարել դեկրետներով: Մասնավորապես Գյորինգը կարգադրել է հաշվի առնել յերկրում յեղած չուգունի ու պողպատի ամբողջ պաշարը: Այն բոլոր ձեռնարկությունները, կազմակերպությունները և անձնավորությունները, վորոնք 1937 թվականի հունիսի 30-ին 10 տոննից ավելի չուգունի ու պողպատի պաշար ունեյին, խիստ պատժի սպառնալիքով պարտավորվել եյին մինչև հուլիսի 15-ն արձանագրել տալ այդ պաշարները հատուկ հսկող որգաններում:

Բայց դեկրետները սոսկ դեկրետներ են, իսկ դոմնաներն ու մարտենյան հնոցները պետք է կանգ առնեն հումքանյութի ու մետաղի պակասության պատճառով:

## ՔԱՂՑԻ ՌԵԺԻՄ

Վերջին ժամանակներս Գերմանիայում սաստկացել է նաև պարենային ճգնաժամը: Գերմանական ֆաշիզմը գրեթե ամբողջապես դադարեցրել է Գերմանիա պարենամթերք ներմուծելը, յեղած վալյուտայի բոլոր ռեսուրսները հատկացնելով ռազմատեխնիկան



հումքի գնմանը: Դրա հետ միասին, գերմանական ֆաշիզմն ի վիճակի չեղավ յերկրում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու այնքան, վորպեսզի գոնե կարելի լիներ բավարարել ներկայիս աղքատիկ պահանջը: Գյուղատնտեսության ասպարեզում գերմանական ֆաշիզմի ձեռնարկած միջոցառումները հասցրին պարենային ճգնաժամի:

Կերերի ներմուծումը դադարեցնելու հետևանքը յեղավ և լինում է այն, վոր գյուղացին ստիպված մորթում է անասունները: Գյուղացին չի ցանկանում կալվածատիրոջից յեռապատիկ գնով կեր գնել, իսկ վերջին ել հարկադրական գներով անասունները վաճառել մոնոպոլ կազմակերպություններին:

Խիստ մեծ դժվարություններ կան նաև հացահատիկային տնտեսության ասպարեզում: Այս դժվարությունների պատճառն այն է, վոր ցանքերի տարածությունը—չնայած ամեն տեսակ պարծենկոտ հայտարարությունների—նվազում է, վորովհետև զգալի չափով տերիտորիաներ վերցված են ռազմական նպատակների համար: Այդ դժվարությունների պատճառներից մեկն ել

Գերմանական կառավարությունը փորձում է այս դժվարությունների դեմ պայքարել դեկրետներով: Մասնավորապես Գյորինգը կարգադրել է հաշվի առնել յերկրում յեղած չուգունի ու պողպատի ամբողջ պաշարը: Այն բոլոր ձեռնարկությունները, կազմակերպությունները և անձնավորությունները, վորոնք 1937 թվականի հունիսի 30-ին 10 տոննից ավելի չուգունի ու պողպատի պաշար ունեյին, խիստ պատժի սպառնալիքով պարտավորվել եյին մինչև հուլիսի 15-ն արձանագրել տալ այդ պաշարները հատուկ հսկող որգաններում:

Բայց դեկրետները սոսկ դեկրետներ են, իսկ դոմնաներն ու մարտենյան հնոցները պետք է կանգ առնեն հանքանյութի ու մետաղի պակասության պատճառով:

## ՔԱՂՑԻ ՌԵԺԻՄ

Վերջին ժամանակներս Գերմանիայում սաստկացել է նաև պարենային ճգնաժամը: Գերմանական ֆաշիզմը գրեթե ամբողջապես դադարեցրել է Գերմանիա պարենամթերք ներմուծելը, յեղած վալյուտայի բոլոր ռեսուրսները հատկացնելով ռազմատեխնիկան



հումքի գնմանը: Դրա հետ միասին, գերմանական ֆաշիզմն ի վիճակի չեղավ յերկրում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու այնքան, վորպեսզի գոնե կարելի լիներ բավարարել ներկայիս աղքատիկ պահանջը: Գյուղատնտեսության ասպարեզում գերմանական ֆաշիզմի ձեռնարկած միջոցառումները հասցրին պարենային ճգնաժամի:

Կերերի ներմուծումը դադարեցնելու հետեվանքը յեղավ և լինում է այն, վոր գյուղացին ստիպված մորթում է անասունները: Գյուղացին չի ցանկանում կալվածատիրոջից յեռապատիկ գնով կեր գնել, իսկ վերջին ել հարկադրական գներով անասունները վաճառել մոնոպոլ կազմակերպություններին:

Խիստ մեծ դժվարություններ կան նաև հացահատիկային տնտեսության ասպարեզում: Այս դժվարությունների պատճառն այն է, վոր ցանքերի տարածությունը—չընայած ամեն տեսակ պարծենկոտ հայտարարությունների—նվազում է, վորովհետև զգալի չափով տերիտորիաներ վերցված են ռազմական նպատակների համար: Այդ դժվարությունների պատճառներից մեկն ել

այն է, որ կեր չլինելու հետևանքով գյու-
ղացիներն ստիպված են իրենց անասուննե-
րին ու թռչուններին կերակրել հացով:

Գերմանական կառավարությունը պարե-
նային դժվարությունների դեմ—այնպես,
ինչպես հումքի դժվարությունների դեմ—
փորձում է պայքարել ռեպրեսիաների և նո-
րանոր հարկադրական միջոցառումներ կիրա-
ռելու միջոցով: Գյուղացիներն իրավունք
չունեն իրենց մթերքները վաճառելու շու-
կայում, այլ պարտավոր են հանձնել մո-
նոպոլ կազմակերպություններին: Իշխա-
նությունները պահանջում են գյուղացուց
պարտադիր կերպով հանձնել ոչ միայն
հացը, այլև գարին, վարսակը և այլն:
Գյուղացիներին խիստ պատիժ է սպառ-
նում, եթե նրանք մթերման համար սահ-
մանված կոնտինգենտի բուսեղեններն օգ-
տագործեն իրենց կարիքների համար կամ
անասուններին կերակրեն հացահատիկով:
Արդեն 1937 թ. հոկտեմբերի 31-ին պետք
է հանձնել սահմանված կոնտինգենտների
30 տոկոսը:

Բայց այս բոլոր ռեպրեսիվ միջոցները
քիչ ներգործություն են ունենում: Գեր-
մանական գյուղացին չի ցանկանում իր



մթերքները կայուն գներով հանձնել մոնո-
պոլ կազմակերպություններին, որովհետև
գաղտնի կերպով կարող է իհարկե
ավելի թանկ վաճառել:

Գերմանիայի ղեկավար զինվորական շըր-
ջանները գտնում են, որ 1914—18 թ. թ.
պատերազմում Գերմանիայի կրած պարտու-
թյան գլխավոր պատճառներից մեկն էլ
պարենամթերքի պակասությունն էր: Ուս-
տի գերմանական ֆաշիզմը ձգտում է հաս-
նելու ինքնամատակարարման, այսինքն
այնպիսի դրության, որ պատերազմի
դեպքում Գերմանիան բավական քանակու-
թյամբ մթերք ունենա թե բանակի հա-
մար և թե թիկունքի աղքատիկ սպառումը
բավարարելու համար:

Սակայն այս ուղղությամբ կատարվող
բոլոր փորձերը սնանկ են դուրս գալիս:

## ՎՈՍԿՈՒ ՊԱՇԱՐԸ ՀԱԼՎԵԼ Է

Գերմանիայի պատերազմի նախապատ-
րաստությունը հսկայական միջոցներ է
կլանում:

Անգլիայի ֆինանսների մինիստր Նևիլ
Չեմբեռլենի հաշվարկումներով, Գերմա-
նիան բանակի ու նավատորմի վրա 1933

թվականին ծախսել է 5 միլիարդ մարկ, 1934 թ.՝ 8 միլիարդ մարկ, 1935 թ.՝ 11 միլիարդ մարկ: Անգլիական բանկային շրջանների օրգան «Բենկերը» հաշվում է, որ Գերմանիան 1933–34 թ. թ. ընդամենը ծախսել է 9·700 միլիոն մարկ, որից սպառազինության վրա՝ 3 միլիարդ մարկ. 1934—35 թ. թ. ծախսել է 12·200 միլիոն մարկ, որից սպառազինության վրա՝ 5·500 միլիոն մարկ. 1935–36 թ. թ. ծախսել է 16·700 միլիոն մարկ, որից սպառազինության վրա՝ 10 միլիարդ մարկ: Այս «Բենկեր»–ը հաշվում է, որ 1936–37 թ. թ. ընդամենը ծախսված է 18·800 միլիոն մարկ, որից սպառազինության վրա՝ 12·600 միլիոն մարկ:

Զարմանալի չէ ուրեմն, որ այս բոլորի հետևանքով հալվեց ոսկու պաշարը: 1929 թվականին ոսկու պաշարը կազմում էր 2·283 միլիոն մարկ (միջամտական տվյալներ), 1932 թվականին, այսինքն գերմանական ֆաշիզմի՝ իշխանության գլուխ անցնելու նախօրյակին, այդ պաշարը դեռ կազմում էր 806 միլիոն մարկ: Սակայն 1936 թ. մարտին Ռայխսբանկի ոսկու պաշարն արդեն կազմում էր միայն 72 միլիոն մարկ,



իսկ 1937 թ. մարտին՝ միայն 67 միլիոն մարկ:

Սպառելով իր ոսկու պաշարը, ֆաշիստական Գերմանիան ուրիշ ճանապարհներ է փնտրում պատերազմի նախապատրաստությունը ֆինանսավորելու համար: Մասնավորապես այս նպատակի համար օգտագործվում են սոցիալական ապահովագրության ֆոնդերը, բնակչության խնայողությունները, որ գտնվում են խնայողական դրամարկղներում, բազմապիսի հարկադրական փոխառությունները, ինչպես նաև ավելացվող հարկերը:

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՏԱՌԱՊԱՆՔՆԵՐԸ

Պատերազմի նախապատրաստությունը Գերմանիայի բնակչությանն անհամար տառապանքներ է պատճառում: Բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի քաղաքական հետապնդման հետ միասին ծայրահեղորեն վատթարանում է նաև Գերմանիայի բնակչության նյութական դրությունը: Աշխատավարձի շարունակական իջեցման հետ մեկտեղ բարձրանում են գները, հատկապես պարենային ճգնաժամի

կապակցությամբ: Մեծածախի գների ինդեքսը Գերմանիայում 1933 թվականին կազմում էր 68 (միջամսական տվյալներ. 1929 թվականն ընդունված է վորպես 100), 1934 թվականին՝ 72, 1935 թ.՝ 74, 1936 թ.՝ 76, 1936 թ. մարտին՝ 76, 1937 թ. մարտին՝ 77:

Ապրուստի արժեքի և սննդամթերքների ինդեքսը (1913—14 թ. ընդունված է վորպես 100. միջամսական տվյալներ) Գերմանիայում 1932 թ. կազմում էր 121,1, 1935 թ.՝ 123, 1936 թ.՝ 124,5, 121,1, 1935 թ.՝ 123, 1936 թ.՝ 124,5, 1936 թ. մարտին՝ 124,3, 1937 թ. մարտին՝ 125:

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՅԵՐԿՈՒ ՅԵՐԵՍԸ

Գերմանիայի ապրած ներքին դժվարությունները նրան ստիպում են դիմելու խաբերայության տակտիկային: Այդ տակտիկան պետք է ծածկի մասնանշված դժվարությունները և պահպանի Գերմանիայի անպարտելիության առասպելը:

Խաբերայության տակտիկայի հետ մեկ-



տեղ, նույն այդ ներքին դժվարությունները Գերմանիային դրդում են կիրառելու կեղծ-խաղաղասիրական փրազների տակտիկա: Այս տակտիկան պետք է քնեցնի մյուս յեվրոպական յերկրների զգաստությունը և ոգնի Գերմանիային միջոցներ ստանալու, միջոցներ, վորոնք անհրաժեշտ են Գերմանիայի տնտեսության բազմաթիվ ճեղքերը կարկատելու և պատերազմի նախապատրաստությունն ուժեղացնելու համար:

Կեղծ-խաղաղասիրական փրազների տակտիկան կիրառվում է հատկապես այն ժամանակ, յերբ Յերրորդ կայսրության եմիսարներն ուղարկվում են արտասահման, վորպեսզի փոխառություններ աղերսեն: Այս տակտիկայի կիրառման համար ամենից հաճախ ոգտագործվում է տնտեսության մինիստր Շախտը: Գերմանիան այս առթիվ չի խորշում վոչ մի միջոցից, ձգտելով փաստարկումներ գտնել Լոնդոնի Սիտիի վրա ազդելու և նրան համոզելու, վոր Գերմանիային ցույց տրվող դրամական ու տնտեսական ոգնությունը հանգստություն կբերի Յեվրոպային:

Այս բոլոր խոսք ու զրույցներով քա-

ղարկված գերմանական շրջիկ գործակալները փորձում են —գործածելով Օստրովսկու հերոսներից մեկի արտահայտությունը— իրենց խոսակիցներից աղերսել «քելքր չոց (փոքրիկ բան), սակայն ոչ քան կոպեկանոց» :



Այն քաղաքական գործիչները, վորոնք ցանկանում են լրջորեն գնահատել ժամանակակից միջազգային իրադրությունը, պետք է իրենց հաշվի առնեն, վոր ագրեսորի անպատժելիության առասպելը սնանկ է: Այդ առասպելը կոչված է կապիտուլյանտական տրամադրություններ հարուցելու Յեվրոպայում, մասնավորապես փոքր յերկրներում: Սակայն այդ առասպելը հերքում են թե Գերմանիայի թիկունքում առկած զգալի դժվարությունները և թե այն փաստը, վոր ագրեսորն անխուսափելիորեն նահանջում է խաղաղասեր յերկրների վճռական գործողությունների հանդեպ: Ագրեսորը հիանալի կերպով գիտե, վոր այդ յերկրների ընդհանուր հզորությունը շատ ավելի գերազանց է թե իր՝ ագրեսորի և թե նրա հնարավոր դաշնակիցների ուժերից:



Հռենոսի մարզը գրավող գերմանական զորամասերի հրամանատարները հրաման ունեյին նահանջելու, յեթե մյուս յերկրները վճռական միջոցներ ձեռք առնեյին: Գերմանական գլխավոր ատյանից հետախուզական ջոկատներ եյին ուղարկված իրադրությունը պարզելու համար:

Այս յեղանակը չարունակաբար ոգտագործում է Գերմանիան, ինչպես և ամեն մի ագրեսոր: Գերմանական ֆաշիզմը նախ պարզում է, թե խաղաղասեր յերկրները վորչափ պատրաստ են հակահարված տալու: Յերբ ագրեսորը տեսնում է, վոր այդ յերկրները բավականաչափ միասին չեն և բավականաչափ հաստատակամություն հանդես չեն բերում, ձեռնարկում է նորանոր ագրեսիվ գործողությունների: Իսկ յերբ ագրեսորն ստիպված է լինում հաշվի առնել խաղաղասեր յերկրների միասնական ու վճռական գործողությունների հնարավորությունը, նա անխուսափելիորեն նահանջում է:

Խաղաղասեր յերկրները, դեն գցելով ագրեսորի անպատժելիության կեղծ առասպելը, պետք է ստեղծեն և կարող են ստեղծել իրական արգելքներ պատերազմի հրձիգների առաջ:

# ՓՈՐԹՈՒԳԱԼԻԱՅԻ ՅԵԼՈՒՅԹԸ

Ֆաշիստական ինտերվենտների յերգչախմբում Փորթուգալիայի ձայնը միշտ լսվել ե ավելի բարձր վանոցով: Անցյալ տարվա հոկտեմբերին դիկտատոր Սալազարի կառավարությունը Չմիջամտելու կոմիտեյին ուղղած իր դիմումի մեջ հանդիսավոր կերպով հայտարարեց, թե «ԽՍՀՄ-ն պատրաստվում ե հարձակվելու Փորթուգալիայի վրա»: Սա այն «արգումենտներից» մեկն եր, վորոնցով Փորթուգալիան հրաժարվում եր իր նավահանգիստների վրա վերահսկողություն սահմանելուց: Այժմ փորթուգալական կառավարությունը վորոշել ե նորից ամբողջ աշխարհի ծիծաղը շարժել — նա դիվանագիտական հարաբերությունները խզել ե Չեխոսլովակիայի հետ:



Բոլորին հայտնի յե այն դերը, վոր Իսպանիայում տեղի ունեցող ինտերվենցիայի մեջ խաղում ե փոքրիկ ֆաշիստական գիշատիչ Փորթուգալիան: Հայտնի յե, վոր գեներալ Ֆրանկոյի զինվորա — ֆաշիստական դավադրությունը պատրաստվեց նաև փորթուգալական տերիտորիայում: Լիսաբոնը հանդիսանում եր իսպանական խռովարարների շտաբը:

Հենց վոր Գերմանիայի ու Իտալիայի ինտերվենցիան սկսվեց Իսպանիայում, փորթուգալական կառավարությունն իր իսպանական սահմանը հյուրընկալությամբ վարկով տվեց: Այդ սահմանից անընդհատ հոսանքով իսպանական տերիտորիան եյին թափվում զենք, ռազմամթերք և հրահանգիչներ, վորոնք ուղարկվում եյին Գերմանիայից ու Իտալիայից: Չմիջամտելու կոմիտեյում փորթուգալական ներկայացուցիչները շարունակ ամբողջապես պաշտպանել են գերմանական ու իտալական ինտերվենտների դիրքավորումը, տարբերվելով միայն իրենց յելույթների աներես լկտիությամբ:

Իր ժամանակին ֆաշիստական ինտերվենտների գործողությունները քննող՝ Լոն-

դոնի Հասարակական կոմիտեն հոկտեմբերի 5-ին հրապարակած իր հաշվետվության մեջ հետևյալ կերպ է բնութագրել Փորթուգալիայի դերը.

«Փորթուգալիան, շնորհիվ իր աշխարհագրական յուրահատուկ դիրքի, կարող էր կարևոր դեր խաղալ խռովարարներին զենք մատակարարելու վրա հսկելու գործում: Մեր տրամադրության տակ յեղած բոլոր ցուցմունքները վկայում են, որ նա չարաշահել է իր դրությունը, բացահայտորեն ոգնել է խռովարարներին և այժմ էլ շարունակում է այդպես վարվել: Միանգամայն պարզ է, որ Փորթուգալիան թե չմիջամտելու համաձայնության կնքումից առաջ և թե հետո թույլ տվեց, որպեսզի իր տերիտորիան այնպիսի բազա հանդիսանա, որտեղից խռովարարները հարձակվեցին իսպանական կառավարության վրա»:

Այդ ժամանակից սկսած Փորթուգալիան ինքնակամորեն վերացրել է այն հսկողությունը, որ Լոնդոնի կոմիտեն հաստատել էր նրա ցամաքային սահմանի վրա:

Հասկանալի յե, թե ինչու չեխոսլովակյան կառավարությունը, տեսնելով այն փաստը, որ Փորթուգալիան չեխոսլովակ-



յան Զբրոյովկա գործարանին խոշոր ռազմական պատվեր է տվել, պայման դրեց, որ Փորթուգալիայի պատվիրած գնդացիրները չպետք է տրվեն իսպանական խռովարարներին: Այդպես գործելով, չեխոսլովակյան կառավարությունը վոչ միայն խելացիորեն ու հեռատեսորեն վարվեց, այլև նրա պահանջը բղխում էր Չեխոսլովակիայի միջազգային պարտավորություններից, քանի որ Չեխոսլովակիան հանդիսանում է Չմիջամտելու կոմիտեյի անդամ: Փորթուգալական կառավարությունը, որը մինչ աչքի յե ընկել — Շչեդրինի խոսքով ասած — «վարչական շարժումների անսքողությամբ», դիմեց հերթական անվայել ժեստի — դիվանագիտական հարաբերությունները խզեց Չեխոսլովակիայի հետ:

Այս ժեստի գործնական հետևանքների նկատմամբ կարելի յե միայն ուսերը վեր քաշել և կռիլովյան առակի քոթոթը հիշել: Փորթուգալիան ամենաաղքատ յերկիրն է Յեվրոպայում: Այստեղ Ֆաշիստական դիկտատուրան խավարի ու անգրագիտության մեջ է պահում բնակչության 66 տոկոսին: Փորթուգալիային է պատկանում բնակչու-

դոնի Հասարակական կոմիտեն հոկտեմբերի 5-ին հրապարակած իր հաշվետվության մեջ հետևյալ կերպ է բնութագրել Փորթուգալիայի դերը.

«Փորթուգալիան, շնորհիվ իր աշխարհագրական յուրահատուկ դիրքի, կարող էր կարևոր դեր խաղալ խռովարարներին զենք մատակարարելու վրա հսկելու գործում: Մեր տրամադրության տակ յեղած բոլոր ցուցմունքները վկայում են, որ նա չարաշահել է իր դրությունը, բացահայտորեն օգնել է խռովարարներին և այժմ էլ շարունակում է այդպես վարվել: Միանգամայն պարզ է, որ Փորթուգալիան թե չմիջամտելու համաձայնության կնքումից առաջ և թե հետո թույլ տվեց, որպեսզի իր տերիտորիան այնպիսի բազա հանդիսանա, որտեղից խռովարարները հարձակվեցին իսպանական կառավարության վրա»:

Այդ ժամանակից սկսած Փորթուգալիան ինքնակամորեն վերացրել է այն հսկողությունը, որ Լոնդոնի կոմիտեն հաստատել էր նրա ցամաքային սահմանի վրա:

Հասկանալի յե, թե ինչու չեխոսլովակյան կառավարությունը, տեսնելով այն փաստը, որ Փորթուգալիան չեխոսլովակ-



յան Զբրոյովկա գործարանին խոշոր ռազմական պատվեր է տվել, պայման դրեց, որ Փորթուգալիայի պատվիրած գնդացիրները չպետք է տրվեն իսպանական խռովարարներին: Այդպես գործելով, չեխոսլովակյան կառավարությունը ոչ միայն խելացիորեն ու հեռատեսորեն վարվեց, այլև նրա պահանջը բղխում էր Չեխոսլովակիայի միջազգային պարտավորություններից, քանի որ Չեխոսլովակիան հանդիսանում է Չմիջամտելու կոմիտեյի անդամ: Փորթուգալական կառավարությունը, որը միշտ աչքի յե ընկել — Շչեդրինի խոսքով ասած — «վարչական շարժումների անսքողությամբ», դիմեց հերթական անվայել ժեստի — դիվանագիտական հարաբերությունները խզեց Չեխոսլովակիայի հետ:

Այս ժեստի գործնական հետևանքների նկատմամբ կարելի յե միայն ուսերը վեր քաշել և կռիլովյան առակի քոթոթը հիշել: Փորթուգալիան ամենաաղքատ յերկիրն է Յեվրոպայում: Այստեղ ֆաշիստական դիկտատուրան խավարի ու անգրագիտության մեջ է պահում բնակչության 66 տոկոսին: Փորթուգալիային է պատկանում բնակչու-

թյան մահացության յեվրոպական ամենաբարձր «ռեկորդը»: Այս ագրարային յերկրի գյուղատնտեսությունն այնպիսի ցածր մակարդակի վրա յե գտնվում, վոր Փորթուգալիան բերքատվության տեսակետից ամենահետին տեղն է բռնում Յեվրոպայում (բացի յերկու լեռնոտ յերկրներից): Իհարկե, չարժե նույնիսկ խոսել այն մասին, թե Փորթուգալիայի «ժեստը» կարող է վորևե տնտեսական հետևանք ունենալ Չեխոսլովակիայի համար:

Սակայն բանն այն է, վոր Փորթուգալիան իր այդ «ժեստն» արել է վոչ թե իր նախաձեռնությամբ, այլ Բեռլինի ու Հռոմի թելադրանքով: Ֆաշիստական Գերմանիան այժմ նոր ուժով պրովոկացիոն կամպանիա յե սկսել Չեխոսլովակիայի դեմ: Գերմանական ֆաշիստներն իդեոլոգիական համառ նախապատրաստություն են տեսնում Չեխոսլովակիայի դեմ ագրեսիվ յելույթ ունենալու համար: Վորևէ ավանտյուրայի համար համապատասխան բարոյական մթնոլորտ ստեղծելու նպատակով գերմանական ֆաշիզմը կապից արձակում է փորթուգալական «քոթոթը»: Սա արդեն առաջին դեպքը չէ. Բեռլինի պահանջով իր



ժամանակին Փորթուգալիան առաջինը յեղավ, վոր դիվանագիտական հարաբերությունները խզեց հանրապետական Իսպանիայի հետ և առաջինը յեղավ, վոր ճանաչեց Ֆրանկոյի «կառավարությունը»:

Տարակուսանք կարող է հարուցել միայն Փորթուգալիայի անգլիական տերերի դիրքը: Փորթուգալիան, վորը ձևականորեն գաղութների տեր է, ըստ եյության ինքը տնտեսապես հանդիսանում է անգլիական կիսագաղութ: Փորթուգալիայի հանքային արդյունաբերությունը, բանկային գործը, տրանսպորտը նշանակալից չափով գտնվում են անգլիական կապիտալի ձեռքում: Անգլիան ունում է Փորթուգալիայի արտահանության յերեք ութերորդական մասը: Փորթուգալիայի ամբողջ արտաքին պարտքը, վորը կազմում է 30 միլիոն ֆունտ ստերլինգ, և բացի դրանից՝ պատերազմական պարտքը, վորը կազմում է 20 միլիոն ֆունտ ստերլինգ, գտնվում է Լոնդոնում: Յեթե անգլիացիները, վորոնք այսպիսի պատկառելի լծակներ ունեն Փորթուգալիայի վրա ներգործելու համար, սիստեմատիկաբար ներողամտություն են հանդես բերում այս փոքր, բայց վնասակար ֆաշիս-

տական գիշատչի նկատմամբ, ապա դա խրախանում միայն ցույց է տալիս չմիջամըտելու անգլիական պաշտոնական քաղականության հակառակ յերեսը:

Փորթուգալական գաղութները նույնպես գտնվում են անգլիական կապիտալի ձեռքում: Սակայն այս տարվա հունվարին ֆրանսիական «Հավաս» հեռագրական գործակալությունը հաղորդեց, որ Գերմանիան 99 տարով «արենդով» է վերցրել փորթուգալական Անգոլա գաղութը: Գերմանական ֆաշիզմը, անգլիացիների թողտվության շնորհիվ, Փորթուգալիային օգտագործելով, Իսպանիայում ինտերվենցիա կատարելու համար, կարողացավ Փորթուգալիայում մի շարք տնտեսական դիրքեր գրավել և արդեն ձեռքը մեկնում է դեպի փորթուգալական գաղութները: Այս է գերմանո — փորթուգալական «բարեկամության» տնտեսական ատաղը: Այդ հիման վրա էլ Բեռլինն այժմ օգտագործում է Լիսաբոնի խաղատիկնիկին Յեվրոպայում նոր ագրեսիվ ավանտյուրաներ նախապատրաստելու համար:

Ագրեսորների անպատժության մթնոլորտում լկտիանում են ոչ միայն խոշոր, այլ և փոքր գիշատիչները:



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ԱՐՏԱՀԱՅՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

Ապրոբացիա. — *Հավանություն, համերաշխություն որևէ բանի, որևէ տեսակետի, որևէ փաստաթղթի, հոդվածի և այլնի նկատմամբ:*

Ընտրության համեմատական (պրոպորցիոնալ) սիստեմ. — *Այս սիստեմով ընտրությունը կատարվում է հետևյալ կերպ. — ընտրություններին մասնակցող յուրաքանչյուր կուսակցություն կամ կազմակերպություն ամբողջ յերկրի մասշտաբով առաջադրում է թեկնածուների միայն մի ցուցակ: Այդ ցուցակներն ամբողջությամբ քվեարկության են դրվում ամեն մի շրջանում: Այնուհետև յուրաքանչյուր կուսակցության*

ցուցակին զանազան շրջաններում տրված քվեները գումարվում են և վորոշվում է, թե այս կամ այն ցուցակն ամբողջ յերկրում տրված քվեների վո՛ր տոկոսն է ստացել: Յուրաքանչյուր ցուցակի թեկնածուներին տրվող պարլամենտական մանդատների տոկոսը կախված է այն քվեների տոկոսից, վոր ընտրությունների ժամանակ ստացել է այդ ցուցակը:

Ստացված մանդատները յուրաքանչյուր ցուցակի թեկնածուների միջև բաժանվում են հետևյալ կերպ.— յեթե ցուցակին բաժին է ընկել մեկ մանդատ, ապա այդ մանդատը տրվում է այն թեկնածուին, վորի ազգանունը ցուցակում նշանակված է առաջին տեղը. յերկրորդ մանդատը տրվում է ցուցակում յերկրորդ տեղը գրաված թեկնածուին և այլն:

Այսպիսի սիստեմի դեպքում կարող են պարլամենտ անցնել նաև այնպիսի կուսակցությունների թեկնածուները, վորոնք համեմատաբար փոքր թվով քվե յեն ստացած լինում: Բուրժուական հասարակակարգի պայմաններում, վորտեղ բանվորների մասնակցությունն ընտրություններում սահմանափակված է ամեն տեսակ ցենզերով ու



արգելքներով, պրոլետարիատի համար այս սիստեմը յերբեմն ավելի ձեռնտու յե լինում, քան մյուսները, քանի վոր դա նրա համար ավելի մեծ հավանականություն է ստեղծում վորոշ քանակությամբ տեղ ձեռք բերելու պարլամենտում: Բայց, մյուս կողմից, այս սիստեմը ձեռնտու յե նաև ռեակցիոն ֆաշիստական խմբերին ու խմբակներին, նրանց հնարավորություն տալով ամեն միջոցով պարլամենտ խցկելու իրենց թեկնածուները:

Հասկանալի յե, վոր մեզ մոտ՝ ԽՍՀ Միությունում համեմատական սիստեմը չի կարող գոյություն ունենալ և դրան վոչ մի կարիք էլ չկա: Մեզ մոտ չկան հակամարտ դասակարգեր և, հետևաբար, չկան իրար հետ պայքարող ու մրցող զանազան կուսակցություններ: Մեզ մոտ գոյություն ունի և կարող է գոյություն ունենալ միմիայն կոմունիստական կուսակցություն: Յեվ մեզ մոտ թեկնածուներ են առաջադրելու վոչ թե իրար թշնամի հանդիսացող, զանազան դասակարգերի ու բուրժուական կլիկների շահերը ներկայացնող կուսակցություններ, ինչպես կապիտալիստական յերկրներումն է լինում, այլ այն կազմակերպությունները,

որոնք ստեղծված են աշխատավորության շահերին համապատասխան, այն է՝ կոմունիստական կուսակցությունը և զանազան հասարակական կազմակերպություններ ու աշխատավորների ընկերություններ, ինչպես նաև բանվորների, կոլտնտեսականների ու կարմիր-բանակայինների ժողովներ: Մեզ մոտ ընտրություններին մասնակցում է ամբողջ ժողովուրդը: Եվ մեր պատգամավորները կլինեն իսկապես ժողովրդի ընտրյալներ, որոնք ներկայացնում են բոլոր աշխատավորների շահերը:

Լոկալ.— Տեղական, սահմանափակված տվյալ վայրի սահմաններում, միայն տվյալ վայրին վերաբերող:

Կոնցեպցիա.— Տեսակետ, հայացքների և սկզբունքների սիստեմ, գիտական հետազոտությունների, տնտեսական երևույթների կամ քաղաքական գործունեության հիմքը կազմող տեսություն: Յուրաքանչյուր պետություն իր քաղաքականության մեջ պահպանում է այս կամ այն կոնցեպցիան, գաղափարների ու հայացքների սիստեմը: Օրինակ՝ ԽՍՀՄ-ի արտաքին քաղաքականությունը վարվում է «մի-



ջազգային հարաբերություններում հանդարտություն, հաստատակամություն, վստահություն, հարգանք, անվտանգություն և անընդհատ խաղաղություն պահպանելու կոնցեպցիաներով» (Լիտվինով): Սրան ուղղակի հակադիր արտաքին-քաղաքական կոնցեպցիաներ ունեն ֆաշիստական պետությունները, որոնք մտահոգված են միայն այն բանով, որ լավագույն կերպով նախապատրաստվեն ուրիշ պետությունների վրա զինված հարձակում գործելու համար, նպատակ ունենալով բռնի կերպով յերկրագնդի նոր վերաբաժանում կատարելու հօգուտ իրենց:

Կոռուպցիա.— Ապականություն, նեխում: Հատուկ իմաստով այս բառը նշանակում է քայքայում կապիտալիստական յերկրների մինիստրների ու պետական պաշտոնյաների մեջ, բուրժուական քաղաքական կուսակցությունների ղեկավարների, բուրժուական ժուռնալիստների մեջ, մի քայքայում, որն արտահայտվում է գլխավորապես կաշառակերությամբ, կաշառվածությամբ, պաշտոնական ու հասարակական դիրքը շահադիտական նպատակներով օգտագործելով, աֆերաներով և այլն:

Կուրիա.— Հին Հռոմում այսպես էին կոչվում այն կատեգորիաները (խմբեր), որոնք ներկայացնում էին տիրապետող դասակարգը — պատրիկությունը (ազնվականությունը): Յուրաքանչյուր կուրիան առանձին կերպով ներկայացուցիչներ էր ընտրում Հին Հռոմի բարձրագույն պետական օրգանի՝ սենատի համար: Սրանից է իր անունն ստացել ավելի հետագա դարաշրջանում առաջացած այսպես կոչված՝ ընտրության կուրիական սիստեմը: Այդ սիստեմի համեմատ՝ բնակչությունն ըստ իր դասակարգային ու դասային պատկանելության, ըստ ունեցվածքային ու կրթական ցենզի (այսինքն ըստ տնտեսական կարողության ու կրթության) բաժանվում է կուրիաների: Յուրաքանչյուր կուրիան առանձին ընտրություն է կատարում, յուրաքանչյուրին իրավունք է տրված որոշյալ թվով պատգամավորներ ընտրելու ներկայացուցչական հաստատության (պարլամենտի) համար, ըստ որում, որպես կանոն, որքան շատ բնակչություն է ընդգրկում տվյալ կուրիան, այնքան քիչ պատգամավոր ընտրելու իրավունք ունի: Այդպիսի կուրիական սիստեմ էր կիրառվում, օրի-



նակ, ցարական Ռուսաստանի Պետական Դումայի ընտրությունների ժամանակ: Դրա արդյունքները հայտնի են — Դումայում վճռականապես գերակշռում էին կալվածատերերն ու տերտերները:

Հիպերբոլիզմ.— Չափազանցության հակում: Առաջացել է «հիպերբոլա» բառից, որը նշանակում է «չափազանցություն»:

Մերձավոր-արևելյան անտանտ («անտանտ»-ը ֆրանսերեն բառ է, որը նշանակում է «համաձայնություն»).— Մերձավոր-արևելյան անտանտը Մերձավոր Արևելքի չորս երկրների — Թյուրքիայի, Իրանի, Իրաքի և Աֆղանստանի — համաձայնությունն է, որն ստորագրվեց 1937 թ. հուլիսի 8-ին, Թեհրանում (Իրանի մայրաքաղաք): Այս համաձայնությունը կնքված է հինգ տարով: Դրա չորս մասնակիցներն էլ հրաժարվում են ագրեսիվ քաղաքականությունից, պարտավորվում են փոխադարձաբար հարգել միմյանց սահմանները, խաղաղ միջոցներով լուծել իրենց միջև ծագող բոլոր վեճերը և ապահովել փոխադարձ կոնսուլտացիան Մերձավոր — արևելյան ան-

տամոտ ընդհանուր շահերը շոշափող միջազգային կոնֆլիկտների ծագման դեպքում: Համաձայնությունը նախատեսում է կազմակերպել Մերձավոր – արևելյան անտանտի խորհուրդ՝ բաղկացած Թյուրքիայի, Իրանի, Իրաքի և Աֆղանստանի արտաքին գործերի մինիստրներից: Այս խորհուրդն առնվազն տարին մեկ անգամ պետք է գումարվի՝ համաձայնության մասնակցող յերկրների արտաքին – քաղաքական յելույթները համաձայնեցնելու համար:

Մերձավոր – արևելյան անտանտն, անկասկած, առաջացավ պատերազմի վտանգի ընդհանուր աճման հետևանքով, վորն արդեն փաստորեն վերածվել է իտալո-գերմանական ֆաշիզմի պատերազմի՝ հանրապետական Իսպանիայի դեմ և զինվորա-ֆաշիստական Ճապոնիայի պատերազմի՝ չինական ժողովրդի դեմ: Մերձավոր-արևելյան յերկրներում լավ են հասկանում, վոր նույնիսկ այն դեպքում, յերբ ագրեսիվ պետությունները կարծես թե մտերմություն են հաստատում այս կամ այն մերձավոր-արևելյան յերկրի հետ, ապա այդ «մտերմությունը» թաքուն նպատակ ունի կամ ագրեսիա կատարելու հենց տվյալ յերկրի



դեմ, կամ թե այդ յերկիրը վորպես պլացդարմ, վորպես հումքի աղբյուր և այլն ոգտագործելու մյուս յերկրների դեմ ագրեսիա կատարելու համար:

Մերձավոր – արևելյան յերկրները մասնավորապես անհանգստացած են Իտալիայի կողմից յեկող ագրեսիայի սպառնալիքից: Իտալական ֆաշիզմի ավազակային ներխուժումը Հաբեշստան, նրա պատերազմական պատրաստությունները Լիբիայում ու Միջերկրական ծովի կղզիներում, նրա ինտրիգներն արաբական յերկրներում, անկասկած, տագնապ են առաջացնում Թյուրքիայում, Իրանում, Իրաքում և նույնիսկ ավելի հեռավոր Աֆղանստանում (Հաբեշստանի դասերը բավականաչափ պարզ կերպով ցույց տվին, վոր նպաստավոր աշխարհագրական դիրքը և յերկրի դժվարամատչելի բնույթը բնավ հուսալի արգելքներ չեն հանդիսանում ժամանակակից բանակի համար): Այս բոլոր հանգամանքները մերձավոր-արևելյան յերկրներին դրդում են շուտափույթ կերպով կարգավորելու փոխադարձ վեճերը և համախմբվելու սանձարձակ ու նոր ավանտյուրաների պատրաստ ագրեսորների դեմ հանդիման:

Պասսիվ ընտրական իրավունք.— Ընտրը-

վելու իրավունք, ի տարբերություն ակտիվ ընտրական իրավունքի, այսինքն՝ ընտրելու իրավունքի: Մեր ընտրական օրենքն այսպիսի տարբերություն չի ճանաչում: Մեզ մոտ 18 տարեկան դարձած և պատգամավորների ընտրությանը մասնակցելու իրավունք ունեցող բոլոր քաղաքացիները միաժամանակ իրավունք ունեն ընտրվելու ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի անդամ: Կապիտալիստական պետությունների ընտրական օրենքները սովորաբար տարբերություն են դնում ակտիվ ու պասսիվ ընտրական իրավունքների միջև: Ընտրվելու իրավունքը (պասսիվ ընտրական իրավունք) սովորաբար պայմանավորվում է ավելի բարձր տարիքի ցենզով, քան ակտիվ ընտրական իրավունքը: Պասսիվ ընտրական իրավունքը հաճախ սահմանափակվում է նաև այլ պայմաններով— ընտրողների համար նախատեսված նստակեցության ժամկետից ավելի մեծ ժամկետով, դրամական գրավական մուծելու պահանջով (Անգլիա, Ճապոնիա): Այս բոլոր պայմանները միայն մի դեր ունեն, այն է՝ ապահովել բուրժուազիայի համար ավելի ձեռնտու մարդկանց պարլամենտի անդամ ընտրվելը:



Խ Ս Հ Մ
ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ
ՈՒԼԱՆ-ԲԱՏՈՐ
ՍԻՆՑԶՅԱՆ
ՆԵՐՔԻՆ ՄՈՆՂՈԼԻԱ
ՍՈՒՅՈՒԱՆ
ՉԱԽԱՐ
ԺԵԽԵ
ԽԵՅԼՈՒՆՑԶՅԱՆ
ԽԱՅԼԱՐ
ՑԻՑԻԿԱՐ
ԽԱՐԲԻՆ
ԳԻՐԻՆ
ԼՅԱՈՆԻՆ
ՄՈՒԿԴԵՆ
ԿԱԼԳԱՆ
ԲԱՈՏՈՒ
ՊԵՅՊԻՆ
ՏՅԱՆՑԶԻՆ
ԽԵԲԵՅ
ՑԶԻՆԱՆ
ՇԱՆԴՈՒՆ
ՑԻՆԴԱՈ
ԴԵՂԻՆ ԾՈՎ
ԿՈՐԵԱ
ՏԱՅՅՈՒԱՆ
ՇԱՆՍԻ
ԽԵՆԱՆ
ԿԱՅՖԻՆ
ՑԶՅԱՆՍՈՒ
ԼԱՆՉԺՈՒ
ՍԻՆԻՆ
ՑԻՆԽԱՅ
ԲԱՈՑԶԻ
ՍԻԱՆ
ՍԻԿԱՆ
ՍԻՉՈՒԱՆ
ՃԱՊՈՆԻԱ

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ „Սոյուզպեչատ"-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին.